

# ԱՌԱՋԻՆ ԽԱՐՈՒՅԿԸ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մեր երգերից ես բռնկվել այդպես,
Առաջի՛ն խարույկ,
Դրանից է, որ ուրախ ես վառվում,
Հրե լեզուներն ասես կրակե
        փողկապ են կապել
Ու փողփողում են հրավառվելիս,
Կայծերը կարծես սալյուտ են տալիս...

Բռնկվել ես դու մեր երազներից,
Դրանից է, որ խաղաղ ես վառվում,
        Առաջի՛ն խարույկ...
Դու փոքրի՜կ-փոքրի՜կ քույրն ես արևի,
Բայց դու ծագում ես գիշերն աստղավառ:
Ու մեր սրտերի ջերմությունից է,
Որ տաք ես այդպես և այդքան պայծառ...
Քեզնով սրտերն են մեր խանդավառվում,
Թվում է մեզ հետ քո շուրջը հիմա
Բոլոր ազգերի մանուկներն ուրախ
        Երգում են, պարում...
Նետի՜ր ցոլքերդ լեռների վրա, ավելի բա՜րձր,
        Առաջի՛ն խարույկ...

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

# ՎԱԶՔԸ

ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Սղոցարաններից սայլով տախտակ էին բերում։ Սայլապանը Բադալենց Դառը պապն էր։ Ես մի կողմ քաշվեցի սայլին ճանապարհ տալու և մի քիչ ուրախացա։

— Ավա՛գ պապի,— ասացի ես,— Դարբինենց Արսեն պապի թոռը չկարեցավ գալ, մնաց ճամփին, համոզի՛ր. քեզ հետ ետ տա՛ր, էլի՜։

— Դու ո՞ւմ տղեն ես,— հարցրեց նա։

Նա այնքան մեծ էր, որ իմ հորն էլ չէր ճանաչի։

— Ավետիք պապի թոռն եմ,— ասացի ես։

Եզները լղար էին, տախտակը թարմ ու ծանր էր. եզները սայլը դժվար էին քաշում։ Անիվը դեմ առավ քարի։

— Տո շա՜ն տղա,— ասաց ինձ և ճիպտեց եզանը,— քու հընկերոջը ճամփին դու ես թողել, ի՞նձ ես ասում՝ ետ տար։

Ճիպտելու հետ՝ եզը լարվեց ու քարից անցըրեց անիվը։ Սայլն անցավ։

Սայլն անցավ, ճանապարհն այլևս բաց էր, բայց ես չէի կարողանում պոկվել իմ կանգնած տեղից։ Արտիս զարկերը խլացան, և հիմա խոր լռություն էր։ Կոճղերն անշարժ էին, ձյունը խաղաղ առկայծում էր, ձյուների մեջ ես անշարժ էի։ Ես զգում էի ծանոթ մի բանի ներկայություն և ինձ թվում էր, թե իմ շալակին կաղնու կեղև կա և բեռան տակ ես խրվում եմ ձյան մեջ ու ինքս իմ մեջ։ Ճիպտելու ձայն եկավ. որևէ տեղ եզ էր լարվում. ինքն իր շուրջը անիվ էր պտտվում, ոտքեր էին դոփում, իսկ ես կանգնել-մնացել էի։ Ես մտա ճանապարհ ու հասկացա, որ այդքան ժամանակ կանգնած եմ եղել տախտակի ու թեփի հոտի մեջ, և կարծես դարձյալ կեղև էի շալակելու։

Ես արդեն վազում էի, բայց առաջին պահ չէի հասկանում, թե դեպի ուր եմ վազում։ Վազում էի, իհարկե, դեպի Սղոցարաններ, ես ինձ ասացի. որ վազում եմ դեպի Սղոցարաններ, բայց ինձ թվում էր. թե դեպի գյուղ եմ վազում և իմ դեմ ընկած է, պըղտոր իր հայացքը բարձրացնում է Արտավազդը։ Ես. սակայն, դեպի գյուղ չէի վազում, ես վազում էի Սղոցարաններ՝ թեփի։ Սղոցարաններից վերև՝ ճանապարհի ոլորանում երևացին տղաների բարալիկ սև կերպարանքները։ Ես կարող էի կարճ ճանապարհով, ձյուների միջով, սառած գետն անցնելով՝ Սղոցարաններ հասնել տղաներից մի քիչ շուտ, բայց ես ուզում էի խառնվել նրանց. կորչել նրանց մեջ, լինել նրանցից մեկը։ Սղոցարանների մոտ ես հասա նրանց ու գնացի նրանց մեջ։

— Օտարը չկարողացա՞վ,— ասացին նրանք։

— Չկարողացավ,— ասացի ես։ Ես չհամարձակվեցի ասել «դու ես Օտար», ես միայն պատասխանեցի «չկարողացավ»։

— Գուտեն տազ, կինդեր.— ասացին նրանք գերի ռումիններին, այսինքն՝ թե՝ բարև՛ ձեզ, երեխանե՛ր։— Դա հիմարություն էր, գերիները երեխաներ չէին. բայց ես իրավունք չտվեցի ուղղելու նրանց սխալը։

— Գուտեն տազ, կինդեր,— որպես նրանցից մեկը, ասացի ես գերի ռումիններին, որոնք փաթաթում էին իրենց ընկերոջ ոտքը։ Նրանք շուռ էին եկել և տխուր ժպտալով նայում էին նիհար այդ տղաներին, որոնք իրենց բարևը տալիս էին իրենց իմացած օտար միակ ձևով, կռանում, իրենց ոսկրոտ բռով թեփ էին վերցնում և ետ էին վազում՝ ոսկրոտ փոքրիկ բռունցքները պինդ սեղմած։ Գերիների հսկիչը, երբ ես աջ բռով վերցնելուց հետո վերցրի նաև ձախ բռով, ծաղրեց.

— Ծո՛ցդ էլ լցրու. ծո՛ցդ էլ։

Ես շպրտեցի երկու բռիս թեփն էլ, դարձա ետ վազելու, բայց ասացի հսկիչին.

— Իսկ դու ի՞նչ գիտես ինչի համար եմ վերցնում։

— Չգիտեմ,— ասաց նա։

— Դե որ չգիտես՝ մի՛ ծաղրիր։

— Ընկերդ ճամփին նստել է ծխելու, քեզ ասել է՝ մի բուռ թեփ էլ ինձ համար կբերես։

— Ո՛չ։

— Դասատվիդ կասեմ՝ կստուգի։

— Ասա՛։— Ես կտրուկ կռացա. վերցրի նախ ձախ ձեռքով՝ Արտավազդի համար մի լիքը բուռ, ապա աջ ձեռքով՝ ինձ համար մի լիքը բուռ թեփ և բռունցքներս սեղմած վազեցի։ Քիչ հետո մտածեցի, որ Արտավազդին կտամ հենց աջ բռիս թեփը. բարևելու պես կպարզեմ իմ աջը՝ ահա՛, քեզ համար եմ բերել, վերցրո՛ւ քո թեփը։

— Քանի՞ բուռ թեփ ես վերցրել.— խմբի մեջ հարցրի ես։

— Մի, քանի՞։

— Արտավազդի համար չե՞ս վերցրել։

— Ո՞նց։

— Արտավազդը ետ մնաց, Արտավազդի համար թե՞փ չես վերցրել։

— Ինչո՞ւ էի վերցնելու։

— Արտավազդը ետ մնաց,— ասացի ես։

— Չեմ վերցրել։

— Ես վերցրել եմ, տամ քեզ՝ դու կտաս իրեն։

— Ինչո՞ւ, դու վերցրել ես՝ դո՛ւ էլ տուր։

Թե ես ինչու չէի կարող իմ աջը այսպես բարե-

Սկիզբը՝ N N 4, 5։



վելու պես պարզել Արտավազդին՝ չկարողացա նրանց բացատրել, որովհետև ես ինքս էլ չէի հասկանում, թե ինչու չունեմ նրան այդպես եղբոր պես ձեռք պարզելու իրավունքը:

— Նրանք հիմա որտե՞ղ կլինեն,— հարցրի.— արդեն գալի՞ս կլինեն:

— Ծաղկած ուռենու մոտ կլինեն:

— Նրանք ուռենու ճյուղ են բերելու,— ասացի ես:

— Մենք էլ թեփ ենք տանում:

— Արտավազդի թեփը տամ քեզ՝ դու կտաս իրեն,— ասացի ես:

— Դու վերցրել ես՝ դո՛ւ էլ տուր:

— Կմեռնե՞ս,— ասացի ես:

— Էդ ինչո՞ւ դու չես տալիս:

— Չէ՛, ասա՛, կմեռնե՞ս:

— Իսկ դու կմեռնե՞ս:

— Մի քիչ դանդաղ գնանք,— ասացի,— նրանք հիմա հազիվ հասնելիս լինեն ուռենուն:

— Նրանք հիմա գնացել եկե՞լ են:

— Իհարկե, Արտավազդը նրանց խմբում չի,— ասացի ես:

— Մեր խմբում էլ չի:

— Եթե Դառը պապը վերցրած լինի...— ասացի:— Մի քիչ դանդաղ գնանք:

— Չես կարողանում՝ մի՛ վազիր,— ասացին:

Ես մի քիչ ուշ հասկացա, որ այդ ասում են ոչ թե առհասարակ թույլերի ու Արտավազդի մասին, այլ ինձ են ասում:

— Էդ ո՞վ չի կարողանում, ե՞ս չեմ կարողանում: Իմ ետևից դե հիմա...— ես լարվեցի, «հասեքը» ես ասելու էի նրանց ետ թողնելուց հետո: Լարվում ու լարվում էի, սակայն իմ լարումը չէի զգում և ոչ էլ նրանք էին ետ մնում, որպեսզի հասկանայի, թե ահա լարվել ու նրանց ետ եմ թողնում: Մի ինչ-որ դատարկություն, որպիսին քո մեջ զգում ես, երբ քեզ [illegible] ըղնում են, օրինակ, սանսկրիտի քերականության մասին, իմ մեջ ահա այդպիսի պարապություն էր, և չէի կարողանում լարվել:— Իսկ էդ ո՛վ էր,— ասացի,— Արտավազդի պատճառով մի ժամ ետ մնացել, բայց եկավ հասավ:

— Դո՛ւ,— ասացին:

— Այո՛, ե՛ս:

— Ինչ որ ճիշտ է՝ ճիշտ է,— ասացին,— Արտավազդի հետ դու ետ մնացիր:

— Սղոցարանների մոտ եկա հասա:

— Արտավազդը չեկավ, դու եկար:

— Ես եկա, հասա:

— Երկուսով ետ մնացիք, հետո դու եկար, Արտավազդը չեկավ:

— Չեկավ, ես մեղավո՞ր եմ, որ չեկավ:

— Ո՞վ է ասում, թե մեղավոր ես:

— Ես մեղավոր չեմ:

— Դու մեղավոր չես:

— Ընդհակառակը՝ ես նրա համար թեփ եմ վերցրել:

— Թեփն ի՞նչ ես անելու:

— Թեփը տալու եմ իրեն:

— Ինչո՞ւ ես տալու:

— Նրա համար եմ վերցրել, բա ի՞նչ անեմ:

— Ի՞նչն ես նրա համար վերցրել:

— Թե՛փը,— ասացի ես,— թե՛փը, թե՛փը: Թեփը նրա համար եմ վերցրել: Մի քիչ դանդաղ գնանք:

— Կծան պապի պատճառով ո՞վ ետ մնաց,— ասացի ես,— հետո եկավ հասավ:

Նրանք ինձ չպատասխանեցին:

— Էս անգամ էլ Կծան պապի պատճառով...

Նրանք ինձ չէին լսում: Նրանք հեռու էին և ավելի էին հեռանում: Համերաշխ, լուռ, կարծես անընդհատ նույն տեղում ու դանդաղ՝ նրանք շարժվում ու շարժվում էին: Դա կարծես վազք չէր, վազքի ծաղր էր, առանց թևավորվելու էլ կարելի էր մի քիչ լարվել,







Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ոտքերին մի քիչ ուժ տալ ու հասնել նրանց... Ես չէի հավատում, որ իմ մեջ պարապություն է, և չէի հավատում, որ նրանց արագությունը վազքի ծաղր չէ... Այնինչ՝ նրանք հեռանում ու հեռանում էին, և նրանց հետ հեռանում էր վազքի հրճվանքը, խաժ աչքերի բույլը, մի քիչ հեգնոտ ու մի քիչ ծիծաղկոտ աչքերի բույլը, և ինձ հետ մնում էր վերջինը լինելու ամոթը: Ես նախանձում էի նրանց, ես ատում էի նրանց ուսերի համերաշխ վերուվարումը, ես ատում էի անկեղծորեն համառ նրանց ընթացքը: Իմ պարապ գոյությունը նրանց ուժեղ խմբին հիմա կապված էր միայն նախանձով:

— Դուք ինձ մենակ եք թողնում,— շշնջացի:

Նրանց թիկունքներն անհաղորդ էին իմ նախանձին, նրանք գնում էին, անընդհատ, չդանդաղելով ու չարագանալով, հեռանում էին, և երբ դարձյալ բարձրացրի հայացքս, նրանք չկային, ձյունն ու ճանապարհն էին, և ես կանգ առա:

— Գնացի՞ք:

Գլուխս կրծքիս, ճռճվելով, շշնջացի.

— Ոչինչ, գալն ինձ չի ուտի:

Եվ ես տեսա, որ ոչնչով, այլևս ոչնչով կապված չեմ նրանց՝ ոչ նախանձով, ոչ էլ առաջինը կամ նրանց մեջ լինելու ցանկությամբ, որ այսպես լավ է՝ ես եմ ու ճանապարհն է, ձյուն ու լռություն է, և լուռ ձյուների մեջ ամայի ճանապարհին միայն ես եմ, ուզենամ՝ կպառկեմ, ուզենամ՝ կշեղվեմ ու ձյուների միջով կըտանեմ իմ պարապ գոյությունը այնտեղ, ուր հանձնարարված չէ գնալ և ես ինքս էլ չգիտեմ:

Չհասկացա, թե այդ ինչպես էր եղել, որ դարձյալ վազում էի և ոչ թե պառկած քնած էի: Ձյուն, ձյուն ու ձյուն էր, և կարծես թե ես նույն ձյան մեջ վազում էի նույն տեղում: Ուշքի էի գալիս, բայց դարձյալ չէի հասկանում քնա՞ծ եմ, թե՞ տրորում եմ նույն ձյունը: Մթնշաղի պես կարծես թե ազատվում, կարծես թե հյուսվում էին իմ մեջ վազքն ու քունը: Ձյունը, ձյունը ու նույն ձյունն էր և ձյան մեջ նույն ձյունն էր և ձյան սպիտակի մեջ չկար ոչ սպիտակ մի բան, որը ետ մնար, և ես ինձ ասեի, թե նա իմ դեմ էր, թե ահա իմ կողքին է, թե ահա ետ մնաց: Վազքը իհարկե եղել էր. մենք շարվել էինք... մենք բաժանվել էինք երկու խմբի... հեռու բլրի ձյուների մեջ բարձր դասարանցիները «ուռա՜» էին կանչել... Կարմրած կանայք նստոտել ու նայում էին... Հետո մենք մեր ձեռքերը խրեցինք տաք թեփի մեջ... Վազքը եղել էր վաղուց, երբևէ, եղել վերջացել էր, և հիմա լինում էր վազքի երազը: Օտարը եկավ, ոտքերը չռած կանգնեց իմ դեմ, նայեց խոշոր աչքերի պղտոր հայացքով, և այդ նույնպես մի անգամ կարծես եղել էր, հիմա լինում էր դրա երազը:

— Մորդ ասա էդ շապիկդ լվանա,— ասացի ես և հասկացա, որ ես էլ նրա դեմ եմ կանգնած:

Նա թուքը կուլ տվեց ու հևալով շնչեց:

— Քեզ համար թեփ եմ բերել:

— Թեփ,— շշնջաց նա:

— Թեփ եմ բերել, քո թեփը ես վերցրել եմ. քեզ չասացի՞, որ քո թեփը ես կբերեմ:

— Իմ թեփը կբերես,— շշնջաց նա: Նա վերցրեց իր մի բուռ թեփը իմ բռից. նա ասաց «թեփ», բայց նա կարծես չէր հասկանում, թե ինչ է անում և ինչ է ասում: Նա բռունցքները սեղմեց կրծքին և լարվեց դեպի Սղոցարաններ: Ես գրկեցի նրան, ընկերոջ ու թույլի նրա մարմինն ինձ դուր եկավ, և ետ դարձրի ու վազեցի նրա կողքից. բայց մի րոպե չէի հասկանում, թե ով է ում ետ դարձրել:

— Ինձ հետ դու ինչո՞ւ ես գալիս,— շշնջաց նա: Նա ուրեմն կարծում էր մենք վազում ենք դեպի Սղոցարաններ:— Դու ինձ հետ մի՛ արի,— շշնջաց նա: Ես նրան բան չասացի, որովհետև ինձ նույնպես թվաց, թե վազում ենք դեպի Սղոցարաններ:

— Ինչո՞ւ ես ինձ հետ գալիս,— շշնջաց նա,— ինձ հետ մի՛ արի:

— Քի՛չ խոսիր,— ասացի ես,— քթո՛վ շնչիր:

— Մի՛ արի:

Այս անգամ ինձ թվաց, թե նա չի ուզում վազել ինձ՝ վատիս հետ: «Ես կգնամ ու կգամ,— շշնջաց նա,— կգնամ ու կգամ», այնինչ՝ նա կարծում էր ես այնքան լավն եմ, որ զուտ իր համար վազում եմ դարձյալ դեպի Սողցարաններ:

— Դու կգնաս ու կգաս,— ասացի ես:

— Կգնամ ու կգամ,— շշնջաց նա:

— Բերանդ փակի՛ր:

Նա ընկավ: Չորեքթաթվեց ու նորից ընկավ:

— Կգնաս ու կգաս,— ասացի,— էդ է քո գնալ ու գալը:

Ես չէի կարողանում նրան բարձրացնել, և իմ չարչարանքն ինձ դուր էր գալիս: Ինձ դուր էր գալիս, որ ես ահա նրան գետնից բարձրացնում եմ, որ նրա բռան մեջ իմ թեփն է, որ իմ մարմինը շփվում է նրա նիհար կողերին:

— Լուռ է,— շշնջաց նա,— խուլ է, խուլ է:

— Ի՞նչ Սողցարաններ, ի՞նչ թեփ,— ասացի,— էդ ո՞վ է ստուգելու՝ մենք Սողցարաններ հասե՞լ ենք, թե՞ ոչ:

— Դու մի անգամ գնացել ես, դու մի՛ արի,— շշնջաց նա,— ես կգնամ ու կգամ:

— Բերանս դառնացել է, մի քիչ դանդաղ գնա:

— Մի՛ արի,— շշնջաց նա,— ես գնամ ու գամ:

— Իմ թեփը տղաներն են բերել,— ասացի ես:

— Քո թեփը տղաներն են բերել,— շշնջաց նա:— Քո բերանը դառնացել է,— շշնջաց նա:— Ոռո՞չ,— բղավեց նա,— ինձ խաբել ես, ինձ գյուղ ես տանում:

Ես փակեցի նրա ճանապարհը:

— Իմ թեփը տղաներն են բերել: Միևնո՛ւյն է, դու Սողցարաններ չե՛ս գնա, չե՛մ թողնի:

— Ոռո՞չ:

Ես գրկեցի նրան, և երկուսս էլ ընկանք: Եվ այդպես պառկելը նույնքան դուրեկան էր, ինչքան վազքի հրճվանքը ճանապարհի սկզբում: Մենք դժվար ելանք, որովհետև ես նրան բաց չէի թողնում, իսկ նա չէր կարողանում բարձրացնել ինձ:

— Դու ինձ խաբում ես,— լաց եղավ նա,— դու Սողցարաններ հասել ես:

— Թեփը տղաներից եմ վերցրել:

— Դուք բոլորդ, բոլորդ Սողցարաններ հասել եք, միայն ես չեմ հասել,— լաց եղավ նա:

Լաց եղավ՝ այսինքն թե իր մեջ այլևս ուժ չէր գտնում շուռ գալու դեպի Սողցարաններ, այսինքն թե համաձայնել էր, որ ահա այդպես՝ իմ տված թեփը բռունցքի մեջ և բռունցքը կրծքին սեղմած՝ վազելու է դեպի գյուղ: Եվ գալիս-գալիս ու լացից ծռմռվում էր.

— Բայց չես ասի, չէ՞... չես ասի, չէ՞, որ իմ թեփը դու ես բերել:

Դարձյալ.

— Դու չես ասի... չես ասի, չէ՞, որ ես Սողցարաններ չեմ հասել:

— Դու Սողցարաններ հասել ես,— ասում էի ես:

Գալիս-գալիս էր ու դարձյալ խեղդվում.

— Բա որ ասեն Սողցարաններում ի՞նչ կար:

— Թե՛փ, թեփ կար,— ասում էի ես,— թեփ կար:

Արտասուքներն ընկնում էին նրա բռունցքներին, իսկ նա չէր ուզում արտասվել, և դեմքը ծռմռվում էր.

— Բայց դու հասե՛լ ես Սողցարաններ:

— Դու էլ ես հասել,— ասում էի ես:

Եվ նա խեղդվում ու փղձկում էր.

— Բայց դու չես ասի, չէ՞, որ ես չեմ հասել:

— Քո թեփը քո բռի մեջ է, դու հասել ես,— ասում էի ես, բայց միևնույն է՝ ստի համար նրա մարմնի մեջ տեղ չկար: Լաց լինելով, նա հարցնում էր.

— Բա որ ասի՝ թեփը որտեղի՞ց է:

— Սողցարաններից:

— Բայց ես Սողցարաններ չեմ հասել,— խեղդվում էր նա:— Սողցարաններ չեմ հասել, բայց ձեռքիս թեփը կա, որտեղի՞ց է:

Գյուղը երևաց: Ես ուղղվեցի և ասացի.

— Դու ինձանից լավ ես վազում:

Բլուրների վրայից գյուղը նայում էր: Տանիքները ճակատներին քաշած՝ գյուղի տները նայում էին: Նայում ու տեսնում էր գյուղը, որ իր որդիներից երկուսը՝ Արսեն պապի թոռը և Ավետիք պապի թոռը, վերադառնում են ընկերաբար միասին: Նրանցից մեկն, իհարկե, մի քիչ ուժեղ կլինի, մյուսը մի քիչ թույլ, բայց ետ ու առաջ չեն ընկնում, գալիս են ընկերաբար ուս-ուսի: Գյուղի տների միջից դպրոցը մեզ նայում էր լուսամուտների մայրամուտային կայծկլտոցով: Դպրոցի դռնից մեր վերադարձը հավանաբար դիտում էր աղջիկների կանաչ-կարմիր-նարնջի խումբը... Նարնջի հագած աղջիկների խումբը՝ ուռենու ծաղկած շիվերը ձեռքներին: Նայում ու տեսնում էր, թե ինչքա՞ն խեղճ, ինչքա՞ն թույլ, սիրտ պայթելու չափ դանդաղ է ամենավերջինների մեր ընթացքը:

— Դպրոցի դռնից հիմա նայում են,— շշնջաց նա:

— Դու ինձանից լավ ես վազում,— ասացի ես,— արագացրո՛ւ:

Նա լարվեց, նրա դեմքը ծռմռվեց, բայց ետ էր մնում: Լարման միջից նա դարձյալ լարվեց, մի պահ հավասարվեց ինձ, կարմիր թիկունքը շեղակիորեն երևացնելու չափ անցավ ինձնից, բայց նույնիսկ այդ ակնթարթին երևում էր, որ նա հավասարվել է միայն անցողիկ մի պահով: Եվ նրա դեմքին բռնկվեց ու հանգավ այն խեղճ ժպիտը, որ մարդկանց դեմքին բացվում է պարտության հետ հաշտվելու պահին:

Նա շշնջաց.

— Դու գնա՛:

— Մենավոր խաչքարը,— ասացի ես:

— Բա՞ն ես ասում,— շշնջաց նա:— Դու գնա՛;



— Մենավոր խաչքարը:

Ուրիշ ի՞նչ էի անելու: Հո չէ՞ր կարելի հենց այնպես, նրան ոչինչ չասելով, նրան չզգալով, իբր թե կողքիդ ոչ ոք էլ չի քաշում վազքի իր չարչարանքը. պոկվել նրանից և տանել քո հաղթական գոյությունը աղջիկների հայացքների միջով դպրոցի բակ:

Դպրոցի ներքևից, ճանապարհի այգեգլխա ոլորանից ետ նայեցի, նա գալիս էր ցավալիորեն դանդաղ, որտեղ թողել էի՝ այնտեղ էլ կար. ձյուների մեջ իրենց ձորում ինքն ու խաչքարն էին և գրեթե չէին շարժվում:

Ես ուղղվեցի ու դուրս եկա դպրոցի բակ, և դըպրոցի բակը դատարկ էր: Ձայն չկար, միայն իմ ականջների խշշոցն էր: Դպրոցի բակը ամայի էր: Դասասենյակում մարդ չկար, գրատախտակը սև ու սրբված էր: Ուսուցչանոցում մարդ չկար, ժամացույցի ծանրոցը ճոճվում էր լռության մեջ, ուռենու ծաղկած շիվերը գրասեղանին մարում էին անշշուկ: Բակը ամայի էր, ուսուցչանոցի շեմքին մի քիչ թեփ կար:

— Ո՛չ,— շշնջացի ես,— ո՛չ, ո՛չ:

Ես բացեցի իմ բուռը, և կոկորդս նեղանում էր, բռունցքիս մեջ թեփը գունդ էր դարձել, թուքս կուլ տվի և իմ աղամախնձորը ելավ, ինձ խեղդեց ու դանդաղ իջավ, և այդ էլ մի անգամ կարծես եղել էր և հիմա լինում էր դրա երազը, և գցեցի թեփի գունդը: Գունդը փլվեց ու շաղ եկավ, և շեմքի թեփը դարձյալ մի քիչ էր, եթե ինքներդ չլինեիք բերած՝ չէիր նկատի:

Ես կռացա, երկու ձեռքով հավաքեցի մեր բոլորիս բերած թեփը, և ամբողջ թեփը եղավ մի բուռ աղբ, և վազեցի ուսուցչուհու տուն: Նա կովերի համար խոտ էր տանում գոմը: Ուռենու ծաղկած շիվը ձեռքին՝ Մադաթը կանգնած էր կովերի և գոմի արանքում, կովերին չէր թողնում գոմ մտնել՝ մինչև որ հորաքույրը խոտ խցկեր մսուրները: Նա հոնքը կեռեց, ինձ նայեց կողքանց և ատամների արանքից ձլթոցով թքեց, այսինքն թե այդպես կխցկի իմ պարտությունն իմ բերանը: Խոտը թևի տակ՝ ուսուցչուհին տեսավ ինձ, շտկեց թևատակի խոտը, հիմա լռություն էր, և նայեց ինձ: Միայն ինձ: Ես բացեցի բուռս և լսեցի թեփի ընկնելու ձայնը: Նրա հայացքում սիրո թե փաղաքշանքի պես մի բան զգացվեց, և շրթունքների աննշան դողով, շշուկով նա հարցրեց. «Իսկ Արտավազդն ո՞ւր է», և ես զգացի, որ նա ուզում է ինձանից լսել՝ «Եկել է, դպրոցում է», բայց նա չէր եկել, դպրոցում չէր, ձորի իր հատակներում, մենակ, շեղվելով ու ընկրկելով կռվում էր իր վազքի դեմ: «Գալիս է»,— ասացի ես, և նրա հայացքը դարձավ այնպիսին, կարծես իմ մեջ նա տեսնում էր իր եղբոր սպանողին:

— Այո՛,— նա շուռ եկավ ու ներս տարավ իրենց կովերի խոտը:

# Մի ձմռան գիշեր

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Ձմեռ էր ու ցուրտ, փուլ եկած ամրոց,
Մենք ամրոցի մեջ՝ կուչ եկած լռին,
Մարմրում էին երկու բարակ մոմ՝
Լքված դաշնամուրին։

Ջյան փաթիլները քամուց պլեկոծ,
Երկրպագուներ լինեին կարծես,
Պաշարում էին զենքեր ու ամրոց,
Ներս էին խուժում թիթեռների պես։

Իջնում էին պաղ փողերի վրա՝
Հրացանների, գնդացիրների,
Ու հալվում էին հաճույքից նրանք՝
Մեր զինվորական ուսադիրներին։

Հանկարծ մեզանից մի համեստ զինվոր,
Սև ստեղների վրա համարձակ
Նվագեց հրա՜շք մի երգ հեռավոր,
Փաթիլների տակ այնպե՜ս վերացած։

Այնպե՜ս նվագեց, որ այդ նվագից
Թրթիռներն էինք զգում սրտերի.
Նա ձմռան բքից, մահվան կրակից
Փրկում էր կարծես բախտը զինվորի։

Նա իր նվագով ճանկերից մահվան
Կարոտն էր փրկում ջահել մարտիկի,
Մենք լսում էինք գիշերում ձմռան
Ոտնաձայները մոտ հաղթանակի...



## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

### «ԶՈՀՎԱԾՆԵՐԸ ՄԵԶ ՀԵՏ ԵՆ»

Լույսերը մարեցին։ Տագնապալի թնդացին թմբուկները։ Լուսարձակները սկսեցին թրատել մութը, իսկ պայթող արկերի ու ռումբերի դղրդյունը, ավտոմատների ու գնդացիրների ճարճատյունը և այրվող ինքնաթիռների վայունը ամբողջացրին թեժ ճակատամարտի պատրանքը։ Դահլիճը քարացել էր։ Ներկաները երկար ժամանակ պատրանքի ազդեցության տակ էին։

Պիոներական ջոկատն իր ելույթը սկսեց «Բուխենվալդյան ահազանգով»։ Այնուհետև իրար հաջորդեցին զինվորական ու ռազմական այլ երգեր, բանաստեղծություններ՝ նվիրված պատերազմի հերոսներին։ «Զոհվածները մեզ հետ են» թեմայով քաղաքային հավաքը նվիրված էր Սովետական Միության կրկնակի հերոս, օդաչու Նելսոն

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ



Կանաչ առուն կանաչաձայն
Կանաչ հեքիաթ է ասում,—
Կանաչ հեքիաթն իմ մանկության
Ճերմակ մազերս են լսում:

Ափին կանգնել՝ մինչ ես կուլամ,
Հավքը վառ-վառ կխոսի,
Այնինչ՝ արցունքն իմ մանկության
Դեռ առվակով կհոսի:

Ավա՜ղ, վառ-վառ իմ անդարձը
Սոխակն, առուն ջուր կուլան,
Մոռանալով քարե բարձը՝
Գլխի տակ իմ մանկության...





Որդի՛ս, դեռ չկաս,
Բայց երբ աշխարհ գաս՝
Մասիս ելնելու իղձս փայփայի՛ր,
Թեկուզ և՛ Մասիս լեռը բարձրանաս,
Մրջյունին էլ, որդի՛ս, բարձրից մի՛ նայիր:

Արևի՛ն նայիր, որ միշտ բարձրանաս,
Բայց չմոռանաս լուսինն էլ իմ հեզ,
Որ հեզ լուսնի պես միշտ խոնարհ մնաս,
Ինչքան էլ շողաս դու արևի պես...

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Ստեփանյանի հիշատակին: Նրա անունը կրող Երևանի Գորկու անվան № 4 դպրոցի դրուժինայի խորհրդի նախագահ Ռուզաննա Հովհաննիսյանը հավաքվածներին պատմեց Նելսոն Ստեփանյանի անունը կրող նավի անձնակազմի և հերոսի հարազատների հետ իրենց բարեկամական կապերի մասին: Երեք տարի առաջ նրանք հանդիպում կազմակերպեցին Նելսոնի դստեր՝ Վիլսոն Ստեփանյանի հետ, իսկ անցյալ տարվա դեկտեմբերին ընդունեցին Ռիգայից Երևան ժամանած նավի անձնակազմին: Հանդիպումը անցավ ուրախ ու հետաքրքիր: Վերջում նավաստիները ուսման առաջավոր պիոներներին հրավիրեցին ամռանը իրենց ճամբարում հանգստանալու:

Ստեփանյանի մասին ուշագրավ դեպքեր պատմեց նրա մարտական ընկերներից Խաչատուր Պետրոսյանը:

Նելսոն Ստեփանյանի անունը կրող № 40 մանկապարտեզի վարիչ Արուսյակ Դիլանյանը պատմեց, թե ինչպես 1943 թվականին հերոսը Նոր տարվա տոնածառի խաղալիքներ էր ուղարկել մանկապարտեզի համար: Պատերազմի թոհուբոհում խիզախ մարտիկը չէր մոռացել երեխաներին:

Հավաքի մասնակից ջոկատները յուրաքանչյուր ելույթից հետո, հանդես էին գալիս երգերով ու արտասանություններով: Վերջում ծաղիկներ դրվեցին հերոս օդաչուի հուշարձանին:

ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ



ՏԱԴՈՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱ 12 տ.

# ԵՐԵՎԱՆԻ ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ

Այս թանգարանը երեք տարեկան է և իբրև այդպիսին միակն է մեր երկրում: Իր ստեղծման առաջին իսկ օրից այն մեծ ուշադրության է արժանացել: Երևան ժամանող ամեն մարդ՝ մեծ թե փոքր, անպայման այցելում է այնտեղ:

Առհասարակ աշխարհում տարեց-տարի մեծանում է հետաքրքրությունը մանկական նկարների նկատմամբ: Հաճախ են մանկական նկարների ցուցահանդեսներ կազմակերպվում աշխարհի շատ երկրներում, և մեծերը դրանց նկատմամբ թերևս պրոֆեսիոնալ նկարների ցուցահանդեսներից ավելի մեծ հետաքրքրություն են ցուցաբերում: Կազմակերպվում են նաև մանկական նկարների միջազգային ցուցահանդեսներ, որտեղ ցուցադրվում են բազմաթիվ երկրների երեխաների ստեղծագործություններ:

Սովետական երեխաների նկարները միջազգային ցուցահանդեսներում վաղուց ուշադրություն են գրավում նրանով, որ դրանք երջանիկ երեխաների նկարներ են և պատկերում են նրանց ուրախությունն ու երազանքները: Եվ, այնուամենայնիվ, մանկական ստեղծագործությունների Երևանի թանգարանը հազիվ թե իրավունք ունենար պատկերասրահ կոչվելու, եթե նրա սրահներում ցուցադրված աշխատանքները սոսկ երջանիկ մանկության արտահայտություն լինեին:

Անցեք սրահից-սրահ և դիտեցեք թանգարանի ցուցանմուշները: Դուք անկասկած կնկատեք գույների գեղեցիկ համադրություն, շարժում, բանաստեղծականություն, գծանկարի արտահայտչականություն, այսինքն այն ամենը, առանց որի գեղանկարչությունը դառնում է անիմաստ: Ոչ մեկը մյուսին չի կրկնում, երեխաներից յուրաքանչյուրը ոչ միայն տեսնում, այլև նկարում է յուրովի, ամեն մեկն իր ուրույն ոճով: Ամենաուրախալին այն է, որ այս թանգարանում ցուցադրված աշխատանքներն աչքի են ընկնում նաև թեմատիկայի բազմազանությամբ՝ կողք-կողքի կախված են հեքիաթային թեմաներով նկարներ, նատյուրմորտներ, կռվի տեսարաններ, դիմանկարներ, բնանկարներ: Երեխաները հափշտակվում են կրկեսային տեսարաններով, զգում են բնության գեղեցկությունը, ճակատամարտի լարվածությունը, հեքիաթի գերող բանաստեղծականությունը և ջանում են հարազատորեն վերարտադրել զգացածը:

Թանգարանի փոքրիկ սրահում կանոնավոր կերպով կազմակերպվում են փոքրիկ նկարիչների անհատական ցուցահանդեսներ: Մեծերի ցուցահանդեսների նման, այստեղ էլ փակցվում է նաև հեղինակի նկարն ու մի քանի խոսք նրա մասին, այսինքն՝ քանի տարեկան է և որտեղ է սովորում: Հաճախ է պատահում, որ անհատական ցուցահանդեսի հեղինակը նախադպրոցական հասակի երեխա է լինում:

Այնքան էլ կարևոր չէ, թե այդ երեխաները հետագայում կդառնա՞ն պրոֆեսիոնալ նկարիչներ թե ոչ: Ահա Նորա Հակոբյանը, որի հրաշալի «Ընտանիք» նկարը ընդմիշտ մտել է թանգարանի ֆոնդի մեջ. վերջացնելով միջնակարգ դպրոցը, նա ընդունվել է պոլիտեխնիկական ինստիտուտ: Նրա շատ՛ հասակակիցներ, որոնց աշխատանքները երեք տարի առաջ թանգարանը ցուցադրեց լայն հասարակայնությանը, նույնպես կյանքի այնպիսի ուղի են ընտրել, որ թվում է ոչ մի առնչություն չունեն արվեստի հետ:

— Մենք վունդերկինդներ չենք պատրաստում,— ասում է մանկական պատկերասրահի դիրեկտոր ընկեր Ժաննա Աղամիրյանը,— այլ ցանկանում ենք միայն, որ երեխաները հոգեպես հարստանան, զարգանա նրանց ճաշակն ու երևակայությունը:

Փոքրիկ նկարիչների անհատական ցուցահանդեսների նպատակն է հետևել այն առաջին քայլերին, որ մարդը կատարում է արվեստի բնագավառում: Նրանցից ամեն մեկը ներկայանում է մեզ իր ուրույն դեմքով, որը պայմանավորված է առաջին անգամ իր ձեռքը ներկ ու մատիտ վերցնող տղայի և աղջկա բնավորությամբ, նրա էությամբ: Քայլելով այդ սրահներում, պարզ տեսնում ես մեկի ուրախ կամ երազկոտ, մյուսի ինքնամփոփ կամ անմիջական բնավորությունը:

Յուրաքանչյուր թանգարան մեծ ու քրտնաջան աշխատանքի արդյունք է, որ կատարում են թանգարանի աշխատակիցները: Երևանի մանկական պատկերասրահը նաև օգնում է մանկավարժներին ավելի լավ հասկանալու երեխաներին:

# ՆԿԱՐԵՑԵ՛Ք, ՆԿԱՐԵՑԵ՛Ք ՄԻՇՏ...

Եթե այսօր ինձ հարցնեն, թե ինչպե՞ս կուզենայի նկարել, կասեմ.

— Ձե՛զ պես, սիրելի՛ պատանիներ:

Որովհետև միայն դուք եք բնությունը, մարդկանց, մեզ շրջապատող իրերը այդքան պարզ ու անմիջական, այդքան գունեղ ու արտահայտիչ տեսնում: Դրանում համոզվելու համար բավական է գոնե մի անգամ այցելել Երևանի մանկական պատկերասրահը, որն ի դեպ միակն է Սովետական Միության մեջ:

Ի՞նչն է մեզ այդքան հմայում և գրավում ձեր աշխատանքներում: Այն, որ դուք կյանքը տեսնում եք գունեղ ու իր բազմերանգության մեջ անկրկնելի, և ոչ թե պատճենահանում եք ձեր տեսածը, այլ գուցե և ձեզ համար աննկատելի ստեղծում եք ձեր տեսածի ու զգացածի կերպարը: Այլ կերպ ասած, դուք ամեն ինչ պատկերում եք ընդհանրացումներով, մի բան, որը ամենակարևորն է բոլոր արվեստների համար:"

Այսօր ես մեկ անգամ ևս դիտեցի ձեր աշխատանքները, և մտածում եմ. քանի՞սը ձեզանից կդառնան նկարիչ: Գուցե և ոչ մեկը: Սա չէ կարևորը և անհրաժեշտ էլ չէ, որ բոլորդ դառնաք նկարիչ: Անհրաժեշտ է, որ բոլորդ նկարեք, որպեսզի զգաք ու հասկանաք կերպարվեստը:

Անհրաժեշտ է, որ բոլորը սիրեն, ավելին՝ միրահարվեն նկարչությանը: Դուք էլ ձեր հերթին, իմ պատանի՛ բարեկամներ, ձեր նկարներով նպաստում եք դրան: Ձեր գեղեցիկ, սրամիտ ու հումորով լի աշխատանքները, հեքիաթների ձեր սքանչելի նկարազարդումները, մենք դիտում ենք գերագույն հաճույքով:

Ահա իմ աչքի առջև են ութ տարեկան Ռաֆիկ Ազիզխանյանի հայկական հեքիաթների նկարազարդումները, ինչպիսի՛ վառ երևակայություն պետք է ունենալ այդքան արտահայտիչ ու հարազատ պատկերելու համար մեր հեքիաթները:

Ահա թիֆլիսցի Հրաչիկ Ավագյանի «Ծարմանկա նվագող կինտոն», որը հիացնում է իր նրբագեղությամբ և մանրամասների կերպարայնությամբ:

Հապա Գոհար Սանոյանի «Զունգլիները» կամ Հարություն Հարությունյանի «Աքաղաղները»:

Ո՞ր մեկն ասես:

Նկարեցե՞ք, և երբե՛ք չընդհատեք, անկախ նրանից նկարիչ կդառնաք թե ոչ:

*ԽԱՉԱՏՈՒՐ ԵՍԱՅԱՆ*

*(Ժողովրդական նկարիչ)*

*Մանկական պատկերասրահի հետ կապված են երևանյան դպրոցների նկարչության շատ ուսուցիչներ: Թանգարանը, օգնելուց բացի, ցուցադրում է նրանց աշակերտների լավագույն աշխատանքները:*

*Թանգարանի ֆոնդային նկարները ցուցադրվել են միջազգային շատ ցուցահանդեսներում: Դիրեկտորի համեստ առանձնասենյակում պահվում են բազմաթիվ պատվո դիպլոմներ, որոնցով իրավամբ կարող էին հպարտանալ ավելի երկար կյանք ունեցող շատ թանգարաններ:*

*Թանգարանի դասախոսության սենյակում երեխաների համար ելույթներ են ունենում նկարիչները, երաժիշտներն ու գրողները:*

*Թանգարանը արվեստի լայն ճանաչում է տալիս երեխաներին: Եթե մեկը չի զգում երաժշտություն կամ քունը տանում է բանաստեղծություններ կարդալիս, կարո՞ղ է խորապես սիրել գեղանկարչությունը:*

*Ամեն օր պատկերասրահ են այցելում շատ երեխաներ: Ամեն մի թանգարանի հիմնական խնդիրն է այնպես անել, որ հնարավորին չափ ավելի շատ մարդ սիրի արվեստը: Մանկական թանգարանի համար այդ խնդիրը առավել կարևոր է, քանի որ եթե փոքրը հասակից սիրես արվեստը, ամբողջ կյանքում կձգտես դեպի այն:*

*ՄԱՐԳԱՐԻՏԱ ՅԱԽՈՆՏՈՎԱ*



*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ 8 տ.*



*ԳՐԻԳՈՐՅԱՆ ՀԵՂԻՆԵ 13 տ.*



*ԱԶԻԶԽԱՆՅԱՆ ՌԱՖԻԿ 11 տ.*



*ՍՏԵՓԱՆՅԱՆ ՀԱԿՈԲ 10 տ.*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

# ՁՅՈՒՆ Է ԳԱԼԻՍ, ՁՅՈՒՆ Է ԳԱԼԻՍ...



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Նախանցյալ օրը «Համայնապատկեր» ծրագրի ժամանակ հաղորդավարն ասաց, որ օդերևութաբանները հայտնում են, թե Երևանում կդիտվի փոփոխական անամպամածություն, առանց տեղումների եղանակ, քամին՝ աջից ձախ և հակառակը, ամբողջ օրը կտեղա ձյուն, ջերմաստիճանը +38:

Երեկ ամբողջ դասարանում ոչ ոք չէր կենտրոնանում դասին: Բոլորը լարված նայում էին դուրս. ամեն մեկը ցանկանում էր առաջինը տեսնել ձյան առաջին փաթիլը:

Սկսվեց. հայոց լեզվի դասը: Պետք է շարադրություն գրեինք: Վաչիկը, որ նստած էր լուսամուտի մոտ, նույնիսկ չէր նկատել ուսուցչուհու ներս մտնելը: Նա երազում էր:

Ահա ձյունը եկել է, ծածկել սար ու ձոր: Այդ թվում նաև Վաչիկենց բակը: Ինքը բարձրացել է ձյունաբլրի գագաթը և սահում է լանջն ի վար: Վաչիկը անցնում է ծառերի արանքով և հանկարծ տրորում մի ծեր շլդիկի ոտքը:

— Խուլիգա՛ն,— բղավում է շլդիկը և կաղալով վազում պոլիկլինիկա:

Քիչ անց Վաչիկի դիմաց հայտընվում է մի բրդոտ: Նա ամենևին չկասկածելով, որ մոտ ապագայում խինկալի է դառնալու, հարձակվում է մեր սահող հերոսի վրա: Վաչիկը դահուկի փայտով հարվածում է արջի գլխին, ուշաթափ անում և շարունակում ճանապարհը: Կես ժամ անց. հայտնվում են որսորդները: Նըրանք օրհնելով արջին շշմեցնողի հորը, իրենց որսը դնում են պատգարակի վրա և տանում արջամթերման բազա: Ճանապարհին արջը մի պահ ուշքի է գալիս և տեսնում, որ Վաչիկը օդում մի շրջան գործելով, սլանում է դեպի վեր: Վաչիկին շըրջապատում է մի տարօրինակ մառախուղ, որից Մարսի հոտ է գալիս: Երկու ժամ անց. Վաչիկը վայրէջք է կատարում Մարսի վրա: Բնիկները նրան անմիջապես տանում են «Էրեբունի» ռեստորանը: Մատուցողը բերում է թիթեռով ապուր, մոծակի ապխտած ազդր, սխտորի մուրաբա և իշամեղվի չիր: Այստեղ վրա է հասնում «Գիշերային Մարսենբուրգ» թերթի հատուկ թղթակիցը.

— Ներեցեք, ի՞նչ է ձեր ոտքերին ամրացված այս երկա՜ր... այսպես երկա՜ր...

Վաչիկը գլխի է ընկնում և պատասխանում.

— Լիժա է:

— Իսկ լիժան ի՞նչ է:

— Դահուկ:

Թղթակիցը ոչինչ չհասկանալով, շարունակում է հարցեր տալ.

— Դուք ինչպե՞ս եք սովորում, դպրոցում:

— Գերազանց,— թույլից-չափավոր փչում է Վաչիկը:

Թղթակիցը անսովոր ցուրտ է զգում և կոճկում քուրքը, հետո էլ ինքն է փչում, և Վաչիկը տիեզերական երկրորդ արագությամբ սլանում է դեպի Երկիր: Կես ճանապարհին նրա ականջին են հասնում տարօրինակ բացականչություններ.

— Վաչի՜կ, ուշքի՜ եկ:

— Հեռո՜ւ գնացեք, վայրէ՜ջք եմ կատարելու,— բղավում է Վաչիկը,— սա ո՞ր մոլորակն է:

— 8-ի «գ»-ն է:

Վաչիկը ուշքի եկավ և տրորեց աչքերը:

— Շարադրությունդ գրեցի՞ր,— հարցրեց ուսուցչուհին:

— Ի՞նչ շարադրություն:

— «Ձյո՜ւն է գալիս, ձյո՜ւն է գալիս...» վերնագրով:

Այդ րոպեին հնչում է դասի զանգը...

ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՐԳՍՅԱՆ
Երևան, Մ. Գորկու անվ. դպր.,
8-րդ դաս. աշ.


ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Պատկերներ

Ամպից անջատվեց ջրի փոքրիկ շիթ,
Քամու համբույրից ձյան փաթիլ դարձավ,
Պարե՜ց, օրորվե՜ց,
Եկավ ու նստեց ծառի մի հատիկ տերևի վրա:
Տերևը դողաց՝
Վախվորած ու հեզ,
Իսկ ամպի ճեղքից երբ արփին շողաց,
Փոքրիկ փաթիլը նորից ջուր դարձավ,
Գոլորշիացավ, երկինք բարձրացավ...

* * *

Հանդարտ ծփում է, ալեկոծվում է անտառը, ճռճվում...
Անտառի միջին ուրախ մի առվակ խոխոջում է լուռ...
Առվի եզերքի մամռոտ քարափին մի փոքրիկ եղնիկ
Պոկում է խոնավ, հյութալի խոտը...
Առուն եղնիկի մանկական անմեղ հայացքն է գրկել
իր հայելու մեջ:

*ՍՈՒՍԱՆՆԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Երևան, № 138 դպր., 7-րդ դաս. աշ.*



# ՎԱԳՐԸ ու ԱՂՎԵՍԸ

(Անգլիական հեքիաթ)



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Մի անգամ աղվեսը գնաց անտառ ուտելիք փընտրելու և հայտնվեց մացառուտների մեջ: Հանկարծ մացառուտներից դուրս թռավ մի մեծ, կատաղած վագր: Աղվեսը վախեցած փախավ, իսկ վագրը ընկավ նրա ետևից: Մեկ էլ նրանք իրենց առջև տեսան մի ահռելի անդունդ, որը փակել էր փախուստի ճանապարհը: Աղվեսը թռավ մի մեծ քարի վրա և սկսեց աղիողորմ լաց լինել: Վագրը կանգ առավ և զարմացած հարցրեց.

— Ինչո՞ւ ես լաց լինում, չէ՞ որ ես դեռ չեմ պատրաստվում քեզ ուտել:

— Ա՜հ,— պատասխանեց աղվեսը,— ես բոլորովին էլ ինձ համար չեմ լալիս, ես հիշեցի ձեր հարգարժան հորը: Նա այնպես ճարպիկ էր, թռչում էր ամենալայն անդունդների վրայով: Ա՜խ, որքան եմ ես ափսոսում, որ այլևս չեմ կարող հիանալ այդպիսի մեկի ուժով ու ճարպկությամբ:

Վագրը չուզեց ետ մնալ իր քաջ հորից, վազելով եկավ, որ թռչի անդունդի վրայով... բայց, ընկավ անդունդը և ջախջախվեց:

— Ես գիտեի, չէ՞, որ դուք ձեր հոր եղունգն անգամ չարժեք,— ասաց աղվեսը ու գնաց իր ճանապարհով:

*Բնագրից թարգմ. ԱՆԱՀԻՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*
*Երևան, № 109 դպր., 8-րդ դաս. աշ.*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# ՀԱՅՈՑ ԼԵՌՆԵՐ

ՅՈՒՐԻ ԿՈՎԱԼ

Հայոց բարձրի՛կ լեռներ,
Խրոխտ ու ձի՛գ լեռներ:
Քարին խոտ է բուսել,
Խոտին քար է բուսել,
Խոտ ու քարով հրաշք
Ժանյակներ եք հյուսել:
Եվ ժամանակն անցած՝
Ժանյակներում արթուն
Բանաստեղծն է կարդում,
Նկարիչն է կարդում:
Շեկ խաղողն է ննջում
Վազերի մեջ փափուկ
Ու ջերմանում ամռան
Ափերի մեջ տաքուկ:
Գիժ գետերն են ճչում,
Գիժ գետերն են թռչում
Եվ ուզում են ասես
Ջրերից վեր ելնել:
Եվ կիրճերի խորքում
Նրանք ձեզ են երգում,
Հայոց բարձրի՛կ լեռներ
Ու պլացի՛կ լեռներ:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆԻ

# ԵՐԳ ՅԱՅՏԱՂԲՅՈՒՐԻ ՄԱՍԻՆ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Երբ ծարավն է շատ տանջում,
Յայտաղբյուրն է մեզ կանչում,
Խմում ենք ու հովանում,
Խմում ենք ու զովանում:
Բայց դու գիտե՞ս, իմ Աննա՛,
Որտեղից է եկել նա:
Ձյունոտ սարից այն հեռու,
Ուր կա վարար գետ, առու,
Մարդիկ լեռներ են հատել,
Ապա շարել պողպատե
Խողովակներ, որոնցով,
Վազում է նա խշշոցով:
Հազար ձոր է անցնում խոր,
Սարեր անցնում, մինչև որ
Մեր յավ քաղաքն է հասնում
Ու կարկաչով մեզ ասում.
— Եկա, որ այս շոգ օրին,
Զովություն տամ բոլորին...

# ՀՈԳՆՈՒԹՅՈՒՆ

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

Ծաղկաթերթ, փոշի, առէջք ու վարսանդ:
— Այս՝ մեկ, այս՝ երկու:—
Մեկը քրտնաջան հաշվում է,
երգում,
Երգը լավում է, չկա երգողը,
Շրշում է ծաղկի թերթեղեն
քողը:
Զատի՛կ գունավոր, գունավո՛ր զատիկ...
Եվ այսպես անվերջ հատիկ
առ հատիկ,
Եվ այսպես անվերջ թերթունք
առ թերթունք,
Ծաղկի գույնզգույն էջերն է թերթում
Մի հոգնած զատիկ.
— Այս՝ մեկ, այս՝ երկու,
Այս՝ մեկ, այս՝ երկու...

Նկ. ԱՂՎԱՆ ՀՈՎՆԱՆՅԱՆԻ

*Այս տարի առանձին գրքով լույս կտեսնի Անուշավան Դեկանցի «Հազարս ծիծաղական պատմությանց և վասն խրատի» գիրքը, որտեղ ամփոփված պատմվածքները ժողովրդից առնված խրատական ու ծիծաղաշարժ նյութերի մշակումներ են։ Տպագրում ենք դրանցից մի քանիսը։*

## ՏԽՈՒՐ ՄԻ ԼԵԳԵՆԴ՝ Ի ԽՐԱՏ ԻՄ ԵՎ ԲՈԼՈՐ ՀԱՅ ԴՈՒՍՏՐԵՐԻ

Ժամանակներ առաջ հայոց երկրի շեներից մեկում երկու հարևանուհի էին ապրում, երկուսն էլ՝ ունևոր, երկուսն էլ՝ երջանիկ։ Բայց մեկը, որ գեշ էր, նաև չար էր ու նախանձոտ. մյուսը, որ սիրուն էր, նաև բարի էր, միամիտ ու խիստ անփույթ։

Գեշը չդիմացավ, վերջ ի վերջո գնաց մի պառավ կախարդի մոտ, ասաց.

— Քեզ շատ ոսկի կտամ, այնպես արա, որ իմ սիրուն հարևանուհին տգեղանա ու երջանիկ կյանքն էլ վերանա նրա տանից։

— Շատ բարի,— ասաց կախարդը,— միայն թե ինձ բեր նրա գլխից երկու մազ։ Մեկը՝ որպեսզի տգեղացնեմ, մյուսը՝ որպեսզի դժբախտացնեմ։



Սիրուն հարսը, որ երկար ու ճոխ մազեր ուներ, ինչպես հիշեցինք, դժբախտաբար, շատ անփույթ էր ու փնթի։ Ամեն առավոտ սանրվելուց հետո գլխից թափվող մազերը ոլորում էր մատի վրա, դռնից շպրտում էր բակ։ Գեշ հարևանուհին, որ շատ լավ գիտեր այս բանը, ինչքան մազ ընկավ ձեռքը,— մի ամբողջ բուռ,— հավաքեց, ուրախ-ուրախ տարավ պառավ կախարդին։

Կախարդը կատարեց իր կախարդանքը, առավ իր վարձը, գեշ հարևանուհին շտապեց տուն՝ սպասելու, թե ինչ պիտի լինի։ Եվ լինելիքը շատ չուշացավ։ Եվ քանզի մազը շատ էր՝ անեծք-կախարդանքն էլ զորավոր եղավ, առատ ու հետևողական։

Շուտով սիրուն հարսին սև ծաղիկ կպավ, դեմքը փչացավ, դարձավ չեչոտ-չոփուռ։ Որոշ ժամանակ անց մեռավ ամուսինը, ընտանիքն ընկավ աղքատության մեջ։ Այնքան աշխատեց սրա-նրա դռանը, որ մեջքին կուզ բուսավ, վշտից այնքան լաց եղավ, որ աչքերը կուրացան։ Այդպես կույր-կույր փողոց ելավ, ընկավ մի փոսի մեջ, ոտքը կոտրեց։

Գեշ հարևանուհու խիղճն սկսեց տանջել, պատմեց սրան, պատմեց նրան, թե ոնց դժբախտացավ էն սիրուն հարսը։ Պատմությունը սերնդե-սերունդ եկավ հասավ մեզ։ Բայց մենք հո հասկանում ենք, որ կախարդանք չէր կարող լինել։ Պարզապես այս պատմությունը հորինել են հայոց մայրերն ու հայոց կեսուրները, որպեսզի իրենց դուստրերը, իրենց ապագա հարսները գլխի աղբը մարդկանց աչքից հեռու պահեն։ Ահա թե ինչու հայ ընտանիքներում՝ քանի կնիկմարդ ու քանի հարսն-աղջիկ ուզում է ապրելիս լինի, ոչ մի տեղ, ոչ մի անկյունում դեն գցված մազի կտոր չես գտնի։ Այսպիսի մաքրակենցաղությամբ հայ կանայք պահպանում են իրենց ընտանիքների երջանկությունը։

## ԹԱՄԲԱԼ ԹԵՎԱՆՆ ՈՒ ԱՆԲԱՆ ԹԵԼՈՆ



Սրանք ոչ բարով մարդ ու կին էին... Այնքան ծո՜ւյլ, այնքան անբա՜ն, որ նույնիսկ հացը պառկած էին ուտում, եթե ջուր տվող չլիներ՝ ծարավ էլ մընում էին։

Երբ սրանց ծնողները մեռան՝ որոշ ժամանակ հարևանները պահեցին, հաց տվին, ջուր տվին, որ սովից չմեռնեն։ Բայց մի օր էլ մարդկանց համբերությունը հատավ, վերցրին մի սայլի մեջ գցեցին, որպեսզի տանեն կենդանի-կենդանի թաղեն, ազատվեն դրանցից։

Գերեզմանատան մոտ մի ձիավոր, տեսնելով, որ սայլի մեջ նետված մարդն ու կինը ողջ-առողջ մարդիկ են, շատ զարմացավ. ասաց.

— Այդ ի՞նչ եք անում, ինչպե՞ս կարելի է, չէ՞ որ նրանք դեռ կենդանի են…

Մարդիկ պատասխանեցին.

— Դեռ…— Ապա ասին.— Մեկ է, իրենց տանը ո՛չ հաց ունեն ուտելու, ո՛չ էլ ջուր խմելու՝ այսօր չէ, վաղը պիտի մեռնեն քաղցից…

Ձիավորը բարի մարդ էր:

— Ոչինչ,— ասաց,— մի՛ թաղեք, ես նրանց ցորեն կտամ, մածուն կտամ…

Այստեղ Թամբալ Թևանը գլուխը մի քիչ բարձրացրեց.

— Բա ցորենը,— ասաց,— առանց աղալու պիտի տա՞ս…

Իսկ անբան Թելոն ավելացրեց.

— Մածունը թան կշինես, նոր կբերես…

Լսելով նրանց խոսքերը՝ ձիավոր մարդը, որ բարի էր, ասաց.

— Պա՛-պա՛-պա՛, այս ի՛նչ տեսակ մարդիկ են եղել աշխարհում, չենք էլ իմացել…

Ասաց, խթանեց ձիուն ու առաջ սլացավ…

Կենդանի մեռելների թափորը շարժվեց առաջ:

## ՄԵՂՐԻ ԳԻՆԸ

Մշեցու մեկը շուկայում մեղր տեսավ… Մեղրը այնքան բուրավետ էր, ոնց որ նեկտար, այնպես դեղին ու այնպես փայլուն, ոնց որ սաթ: Մշեցու բերնի ջրերը գնացին: Բայց ի՛նչ կարող էր անել, ընդամենը մի փարա ուներ. գնաց մի հաց առավ, եկավ մեղրի

## ՄԱՐԴԻԿ ՍԵՂԱՆԻ ՇՈՒՐՋԸ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

### ԴԱՌՆ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆ

Ավանդությունն ասում է, թե Վլադիմիր Մոնոմախը, Կիևյան Ռուսիայի համար կրոն ընտրելիս, մուսուլմանական կրոնը մերժեց այն պատճառով, որ իսլամն արգելում էր գինին:

— Ռուսիայի ուրախությունն էլ խմելն է,— իբր թե խորիմաստ հայտարարել է իշխանը:

Երբ նայում ենք այսօրվա տեսանկյունից, հին հույները խմելու հարցում ասկետներ ու ճգնավորներ էին: Խաղողի գինին անգամ առանց ջուր խառնելու չէին խմում: Նույնիսկ սահմանված էր գինու և ջրի խառնուրդի որոշակի չափեր: Սովորաբար ընդունված էր $^2/_3$ ջուր $^1/_3$ գինի հարաբերությունը: Ոմանք, սակայն, դա շատ թունդ էին համարում իրենց հին-հունական գլուխների համար և խոհեմաբար գերադասում էին $^3/_4$ ջուր $^1/_4$ գինի հարաբերությունը: Չգիտես ինչու, նման հարաբերությունը նրանց մոտ կոչվում էր «գորտային»: Ու երբ մեկը խնդրում էր իր համար «գորտային» լցնել, նրան նույնքան լավ էին հասկանում, որքան մենք ենք հասկանում մեր ժամանակների խմողների լեզուն:

Երբ հույներն առաջին անգամ շփվեցին սկյութների հետ, նրանց զարմացրեց անխառն գինի խմելու սկյութների սովորույթը: Ինչպես ամեն մի վատ օրինակ, բնականաբար, այդ սովորույթը շատ շուտով կողմնակիցներ գտավ հենց Հունաստանում: Ու երբ որևէ մեկն ուզում էր անել մի բան, որ շարժեր մյուսների զարմանքը, մատովակին ասում էր. «Հապա լցրու սկյութավարի»:



Այդ նշանակում էր, որ նա պետք է անխառն գինի խմեր:

Գուշակելով նման սովորության կործանարար հետևանքները, խորամիտ հույները իրենց ողջ արիությամբ փորձում էին դրա առաջն առնել: Հունաստանի որոշ շրջաններում անխառն գինի օգտագործողները մահվան էին դատապարտվում:

Հռոմեացիները, որ չէին ժառանգել իրենց հույն եղբայրների ազնվաբարո չափավորությունը, սովորություն ունեին որևէ մեկի կենացը խմելիս դատարկել այնքան գավաթ, որքան տառ ուներ նրա անունը: Նման պարագայում այն մարդը, որ ուներ, ասենք, Վեսպասիան կամ Սկրիբորիան անունը, բացահայտ առավելություն ուներ, օրինակ, Պիոսի կամ Գայոսի հանդեպ: Ռուսաստանում նման սովորության չհանգեցին, բայց դա փոխհատուցեցին գինու գավաթների մեծությամբ:

Թե Ռուսիայում որքան մեծ են եղել խմելու անոթները, կարելի է դատել մեծ իշխան Իվան Երրորդին Ղրիմի Մենգլի-Գիրեյ խանի գրած նամակից: Այդ նամակում խանն իշխանին խնդրում է իրեն նվեր ուղարկել եր-

Սկիզբը՝ 1972 թ. № 12-ում և 1973 թ. №№ 1, 3:



Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

տաշտակի դիմացը կանգնեց: Հացի բոքոնից պոկում էր, պատառը դեպի տաշտակը պարզում, իբր թաթախում մեղրի զանգվածի մեջ, ապա պատառը ոլորելով, զգույշ ու արագ բերանը տանում... և մեղրից ոչ մի կաթիլ չէր ծորում զգեստի վրա: Այնպես ախորժակով էր ուտում, որ մարդիկ հավաքվեցին, սկսեցին թամաշա անել:

Երբ մշեցին ավարտեց իր մեղրահացկերույթը՝ նրան մոտեցավ մեղրի տերը և ասաց.

— Հը՞, համո՞վ էր մեղրս:

— Հա՛,— ասաց մշեցին,— շա՜տ համով էր:

— Դե փարան տո՛ւր:

— Փարա՞, ի՞նչ փարա:

— Մեղրի վարձը:

Մշեցին իրեն չկորցրեց. ձեռքը տարավ ծոցը, ետ հանեց, մատները իրար քսելով սկսեց համրել.

— Առ, էս մեկ փարա. էս երկու փարա՛, էս երեք փարա՛...

Հավաքված թամաշավորները խնդացին, ասացին.

— Ի՛նչ տեսակ որ կերած մեղրն էր, է՛ն տեսակ էլ տված փարեն է:

կու դույլանոց արծաթե թասը: «Ես միշտ դրանով կխմեմ,— կաշառող բարեհոգությամբ հավաստիացնում է նա,— ու քեզ կմըտաբերեմ, եղբա՛յրս...»

Դեռևս Կիևյան Ռուսիայում, որպեսզի հյուրին ստիպեն շատ խմել, մի յուրահատուկ մրցության էին հրավիրում՝ թե ով ում կհաղթի: Երբ Իգորի կինը՝ Օլգան ուզում է դրևլյաններից լուծել ամուսնու մահվան վրեժը, խնջույքի է հրավիրում նրանց, ապա իր մարդկանց թաքուն հրամայում է հարբեցնել նրանց՝ խմելով եղբայրության, սիրո և առողջության կենացը: Հրաժարվել նման կենացից՝ կնշանակեր մահացու վիրավորանք հասցնել դիմացինին: Եվ, վերջ ի վերջո, Օլգայի դրուժինան հարբեցրեց դրևլյաններին ու կոտորեց բոլորին՝ հինգ հազար հոգու: Հազարամյա վաղեմություն ունեցող այս դեպքը թող ուշացած դաս ու խրատ լինի նրանց, ովքեր հիմա էլ փորձում են չափից ավելի և իրենց կարողությունները հաշվի չառնելով՝ խմել: Զանզի դեռևս Օվիդիոսն է գրել. «Մի՛ խմեք ավելի, քան ձեր գլուխը կդիմանա, խուսափեցե՛ք բոլոր իրերը զույգ-զույգ տեսնելուց»:

Մարդիկ կան, որ հարբեցողությամբ կործանել են իրենց և՛ խելքն ու միտքը, և՛ խիղճը, և՛ ամբողջ կյանքը: Ճիշտ այնպես, ինչպես լողալ չիմացող մարդը խեղդվում է ծովում: Բայց դա նշանակո՞ւմ է, արդյոք, որ մյուսները միայն ափով պիտի քայլեն և վախից ջուրը չմտնեն: Սովորաբար, երբ արատը չի հաջողվում թաքցնել, աշխատում են գեղեցկացնել: Այդպես էլ գինեմոլությունը: Անկամ մարդկանց այդ արատն իր «ֆոլկլորն» է ստեղծել՝ կատակերգեր ու զվարճախոսություններ, ուր հարբեցողությունը ներկայացվում է իբրև «լոթի» և «իգիթ», «քեֆ և ուրախություն» սիրող, ուտող-խմող տղաների գործ, նույնիսկ՝ քաջա-



գործություն: Ըստ երևույթին, ձեռքից գնացած գինեմոլներին կյանքում մնում է միայն մխիթարվել այդ «ֆոլկլորով» ու մեկ էլ իրար մեջ պարծենալով, թե ով, երբ և ինչքան է խմել:

Հնից եկող մի առակ կա այն մարդու մասին, որ երազում էր թագավոր դառնալ:

— Եվ ի՞նչ կանեիր այն ժամանակ,— հարցնում են նրան:

— Ես... ես հարյուր ռուբլի կգողանայի ու կփախչեի:

Ժողովրդական այս հումորի խորունկ, և ցավալի, միտքն այն է, թե մարդն իր ունեցած հնարավորությունից որքան ավելի մանր ու չնչին կարող է լինել: Պատկերացրեք հապա, մարդը կարող է տիրանալ մի ամբողջ թագավորության, բայց մի հարյուր ռուբլի է թռցնում ու փախչում: Բայց այդպես չե՞ն վարվում, արդյոք, նաև նրանք, ովքեր կյանքի մեծ, հրճվալի, բազմազան հարստությունից շտապում են հափշտակել միայն մեկը՝ օղու շիշը:

Արժե՞ ապրել՝ կյանքից այդքան քիչ բան վերցնելու համար:

(Նարոնանկեյի)

Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ

# ՓՈԽՎՈՒՄ Է ՕԴԻ ԲԱՂԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Հարյուր հազարավոր տարիների ընթացքում մարդը հարմարվել է օդի կազմի որոշակի հարաբերությանը: Դպրոցական դասագրքերից մեզ հայտնի է, որ օդի 78 տոկոսը կազմում է ազոտը, 21 տոկոսը՝ թթվածինը, իսկ մնացած բոլոր գազերը միասին վերցրած կազմում են ընդամենը 1.0 տոկոս (չեզոք գազերը՝ 0.94, ածխաթթու գազը՝ 0.03 և այլ գազեր ու խառնուրդներ՝ 0.03 տոկոս):

Սակայն ներկայումս այդ հարաբերությունը փոփոխվում է արդյունաբերության ու տեխնիկայի աննախընթաց զարգացման հետևանքով: Գիտնականները նկատել են, որ վերջին հարյուրամյակում օդում ածխաթթու գազը ավելացել է 10 տոկոսով: Միջազգային գեոֆիզիկական վերջին տարվա հաշվարկները ցույց են տվել, որ ամեն տարի մնոլորտում ածխաթթվի պարունակությունը ավելանում է 0,2 տոկոսով: Ածխածնի օքսիդից բացի արդյունաբերական ձեռնարկությունները և տրանսպորտը օդ են արտամղում նաև ամոնիակ, քլոր, ֆտոր, ազոտի օքսիդներ, ծծմբաջրածին և այլ միացություններ: Ժամանակակից քաղաքներ կան, որ ծածկված են 1,5—2,5 կմ բարձրությամբ գազային «թասակներով»: Միայն Փարիզի ավտոտրանսպորտը օդ է արտամղում օրական 50 միլիոն խորանարդ մետր ածխածնի օքսիդ: Այս քաղաքում օդը այն աստիճան հագեցված է վնասակար նյութերով, որ փողոցային երթևեկությունը կանոնավորող ոստիկանը ստիպված է ժամանակ առ ժամանակ հատուկ սարքից մաքուր օդ շնչել: Փարիզի փողոցներում տեղադրված են հատուկ ավտոմատներ, որտեղ մանր դրամ գցելով կարելի է մաքուր օդ շնչել:

Մոտ 3,5 միլիոն բնակիչ ունեցող Լոս-Անջելոսում հաշվվում է ավելի քան 4 միլիոն ավտոմեքենա, որոնք օրական այրում են 8 միլիոն գալլոն բենզին (այսինքն ավելի շատ, քան Ֆրանսիայի բոլոր ավտոմեքենաները միասին վերցրած): Դրա հետևանքով օդ են արտամղվում ավելի քան 12 հազար տոննա ածխաջրածին, ազոտի օքսիդներ և ածխածնի օքսիդներ, որոնք միանգամայն բավարար են գազերի խեղդուկ, սրտխառնոց պատճառող մառախուղ, այսպես կոչված «սմոգ» առաջացնելու համար:

ԱՄՆ-ի բոլոր ավտոմեքենաները օրական այնքան վնասակար նյութեր են արտամղում, որը հավասար է Նյու-Յորքից մինչև Չիկագո մեկ շարքով շարված ավտոմեքենաների ընդհանուր քաշին:

Արդյունաբերական ձեռնարկությունները և տրանսպորտը օդ են արտամղում նաև մեծ քանակությամբ պինդ մասնիկներ՝ աերոզոլներ, որոնք բավականին երկար ժամանակ մնում են օդում կախված վիճակում: Պարզված է, որ խոշոր ջերմաէլեկտրակայանը ամեն օր օդ է արձակում մոտ 50 տոննա փոշի: Նման նյութերը խիստ վնասակար են մարդու առողջության համար: Այդ վտանգը ավելի է մեծանում, քանի որ զանազան նյութեր օդում թթվածնի, օզոնի և արեգակնային ճառագայթման ազդեցության տակ քիմիական ռեակցիաների մեջ են մտնում միմյանց հետ և տալիս զանազան նոր, առավել թունավոր միացություններ: Պիտսբուրգում (ԱՄՆ) կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ քաղաքի յուրաքանչյուր քառակուսի մղոնի վրա միջին հաշվով տարեկան թափվում է 610 տոննա փոշի: Չեխոսլովակիայում կատարված համանման դիտողությունները բերել են այն համոզման, որ Պրագայում օդային ավազանի մեկ քառակուսի կիլոմետրին ընկնում է 308 կգ մուր և 130—620 կգ փոշի՝ օդի մեջ: Տարվա ընթացքում օդից քաղաքի վրա է թափվում ավելի քան 5000 տոննա կեղտ: Դա այնպիսի քանակություն է, որ հազիվ կարելի է տեղափոխել երկաթուղային 200 վագոններով:

Մեծացել է նաև օդի կենսաբանական աղտոտվածությունը: Ներկայումս խոշոր բնակավայրերում օդի մեկ խորանարդ մետրի մեջ պարունակվում է 100 հազարից մինչև մի քանի միլիոն մանրէներ:

Օդի աղտոտվածությունը մարդու համար առավել վտանգավոր է այն վայրերում, որտեղ երկարատև մառախուղները նպաստում են օդի զանգվածների տեղական կուտակմանը: Մշտական մառախուղների քաղաքում՝ Լոնդոնում այդ երևույթը աղետալի չափերի է հասել: 1952 թ. դրա հետևանքով զոհվել են 4 հազար լոնդոնցիներ (տեղական մառախուղի հետևանքով օդում ծծմբային անհիդրիդի բաղադրությունը ավելացել էր մի քանի տասնյակ անգամ):

Այս ամենը լուրջ կերպով անհանգստացնում է գիտնականներին և պետական գործիչներին: Ներկայումս ամենուրեք հարց է բարձրացվում առավելագույն չափով մաքրել ու վնասազերծել գործարանների արտամղած ծուխը և վնասակար նյութերը, պայքարել օդի աղտոտվածության

# ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱՐ ԱՆՀՆԱՐԻՆ ԲԱՆ ՉԿԱ

Միջավայրի աղտոտման դեմ պայքարելու համար Սովետական Միության կառավարությունը հսկայական միջոցներ է ծախսում՝ տարեկան 10—12 միլիարդ ռուբլի։

Մոսկվայում այժմ գործում են շուրջ յոթ հազար մաքրող սարքավորումներ։ Կաթսայատներն ու ջերմաէլեկտրակայանները աշխատում են գազով։ Ձեռք առնված միջոցների շնորհիվ օդի միջի փոշու և ծծմբային գազի պարունակությունը վերջին 20 տարում պակասել է 4 անգամ։ Այժմ Մոսկվայի օդը ամենամաքուրն է, աշխարհի նույն մեծության մյուս բոլոր քաղաքների հետ համեմատած։

Միաժամանակ մեծ աշխատանք է տարվում ստեղծելու այնպիսի արդյունաբերություն, որ չապականի բիոսֆերան։ Այդպիսի մի օրինակ է Լենինականի մսի կոմբինատը։ Այստեղ անասունները շարվեշարան ներս են մտնում և ավտոմատ մեքենաների միջոցով վեր ածվում մսի, երշիկի, կաշվի, նրբերշիկի, սոսընձի և այլ մթերքների։ Այդ կոմբինատը թափոններ չի ունենում, օգտագործվում են՝ մազը, աղիները, կճղակները, գոմաղբը ամեն ինչ։ Ահա այդպիսին է լինելու ապագայի ողջ արդյունաբերությունը, որով և կվերանա մարդու բիոսֆերայի (կենսամիջավայր) ապականման վտանգը։

Այսօր ահռելի քանակությամբ ավտոմեքենաներ բենզինի այրուցք են նետում օդի մեջ և ապականում այն։ Աշխարհի բոլոր երկրների գիտնականները փորձեր են անում ստեղծել ոչ թե բենզինով, այլ էլեկտրականությամբ աշխատող ավտոմեքենաներ։ Փորձերը հաջող են անցնում, մեզ մոտ և արտասահմանում այդպիսի մեքենաների առաջին նմուշները արդեն կան։ Մոտիկ ապագայում նրանք կգան փոխարինելու բենզինով աշխատող այն հարյուր միլիոնավոր մեքենաներին, որոնք այսօր ապականում են մթնոլորտը։

Այն ամենը, ինչ կարելի է անել պահպանելու համար մեր երկրի բնության, օդի, ջրի անաղարտությունը՝ անում են մեր պետությունը, մեր գիտնականները, մեր ժողովուրդը։ Այդ գործին իրենց մասնակցությունն են բերում նաև մեր երկրի, այդ թվում և Հայաստանի պիոներներն ու դպրոցականները։ Ահա 13 գարուն և 13 աշուն է, որ Հայաստանի պիոներ-դպրոցականները, բնության պաշտպանության իրենց «շտաբի» ղեկավարությամբ ծառատնկում են կատարում ավաններում, քաղաքներում, գյուղերում։ Անտառային բացատներում նրանք հիմնում են անտառ-այգիներ, երկրի բնակավայրերը իրար հետ կապում են ծառուղիներով, հիմնում են դպրոցամերձ պարտեզներ և պուրակներ, պատվաստում են վայրի պտղատու ծառերը։ Երկիրը ծառապատելու և հայրենի բնությունը վերափոխելու ասպարեզում մեր պատանեկության կատարածը բազմիցս արժանացել է միութենական մամուլի և, առանձնապես, «Պրավդայի» դրվատանքին։

Երեխաների տնկած և աճեցրած հազարավոր ծառերն էլ իրենց հերթին մաքրում են օդը թունավոր գազերից և մթնոլորտի մեջ ավելացնում են բոլոր շնչավորներին այնքան անհրաժեշտ թթվածնի տոկոսը։ Ծառերը՝ մեր կանաչ բարեկամները, շարունակ պատերազմի մեջ են գտնվում տեխնիկայի արտավիժած գազերի դեմ։ Ուրեմն և տարեցտարի մենք պետք է հզորացնենք մեր առողջության համար պատերազմող այդ բանակը։ Ինչպե՞ս։ Մեր երկրի մերկությունը ծառաստաններով պատելով։ Մեր դպրոցներին, գործարաններին կից այնպիսի օրինակելի պուրակներ ստեղծելով, ինչպիսին կա Նոր Հաճն ավանում։ Դրախտային այդ այգու ծառուղիներում զբոսնում և լիաթոք շնչում են լազերի գործարանի բանվորները, և նրանց չի մտահոգում իրենց շրջապատի մթնոլորտի աղտոտումը, որովհետև իրենց առողջության այնպիսի պահապաններ ունեն, ինչպիսիք են իրենց աճեցրած ծառերը։

Ամեն գործարանին կից, ամեն դպրոցին կից, ամեն թաղամասում պետք է ստեղծել այդպիսի պուրակներ։ Եվ այն ժամանակ թթվածին շնչելու համար երբեք հարկադրված չենք լինի վազել դեպի հատուկ սարքավորումները, ինչպես դա անում են Փարիզում ու Լոնդոնում։

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

---

դեմ, աստիճանաբար հրաժարվել տրանսպորտի այնպիսի միջոցներից, որոնք նավթամթերքներով են աշխատում, լայն կերպով զարգացնել էլեկտրատրանսպորտը, ինտենսիվ կերպով կանաչապատել ու անտառապատել քաղաքներն ու բնակավայրերը։

Օդում վնասակար նյութերի խտության ավելացումը վտանգավոր է ոչ միայն մարդու, այլև կենդանիների ու բույսերի համար։ Դա միաժամանակ անտառների մասսայական ոչնչացման պատճառ է հանդիսանում։ Դեռ ավելին, ինչպես ձեզ արդեն ասել ենք մեր զրույցներից մեկում, օդում ածխաթթու գազի ավելացումը կարող է բարձրացնել մթնոլորտի ընդհանուր ջերմությունը, որի ահավոր հետևանքները ձեզ համար պարզ են։

Սակայն, համոզված ենք, որ բոլոր երկրների գիտնականները ու պետական գործիչները կմիավորեն իրենց ջանքերը և միասնական ուժերով կպայքարեն բնության և մարդու այդ ահավոր թշնամու դեմ։

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ԻՆՉՊԻՍԻ ԹՈՒԹԱԿՆԵՐ ԿԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Ի. ԱԿԻՄՈՒՇԿԻՆ

Առաջին թութակները Եվրոպա են բերել Հնդկաստան և արևելյան մյուս երկրներ արշավանքի մեկնած Ալեքսանդր Մակեդոնացու զինվորները։ Ամերիկայի հայտնագործությունից հետո նրանց թիվը ավելի շատացավ Եվրոպայում։ Այժմ թութակը ամենատարածված և ամենասիրելի թռչուններից մեկն է։ Աշխարհում կան բազմապիսի թութակներ, որոնք իրարից տարբերվում են գունավորումով, չափերով և սովորույթներով։

Կակադուները մոտավորապես ագռավի չափ են, լինում են սև ու սպիտակ և գլխներին ունենում են մեծ փուփուլ։ Սև կակադուն ավելի խոշոր է, իսկ ընդհանրապես, նա ամենաերկարակտուց թութակն է։ Տասը սանտիմետրանոց կտուցով հեշտությամբ կարող է կծել մարդու մատը։ «Կակադուն» մալայական «կակատուա» բառից է, որ նշանակում է «սրաքերան»։



Կապտադեղնավուն, կանաչակարմրավուն և այլ գույներ ունեցող հարավամերիկյան այս թութակները կենդանաբանական այգիների սովորական բնակիչներից են։ Աշխարհի ամենամեծ թութակը հակինթի գույն ունեցող արան է, որի երկարությունը՝ պոչից մինչև կտուց, մոտ մեկ մետր է։ Մյուս արաները մի քիչ փոքր են։ Նրանց կտուցն այնքան ուժեղ է, որ կարող են կտրել երկու միլիմետր հաստությամբ մետաղալարը։ Շատ ձեռնասուն արաներ են ապրում հնդկացիների գյուղերում։ Տոների ժամանակ բնակիչները զուգվում են թութակների գույնզգույն փետուրներով, իսկ նրանց զարդարում գեղեցիկ ժապավեններով։ Արա թութակները նաև հիանալի պահակներ են։ Երբ գյուղում անծանոթ մարդ է երևում, խռպոտ ճիչերով հայտնում են այդ մասին։

Հարյուր երեսուն տարի առաջ Ավստրալիայից Եվրոպա ներմուծեցին ալեձև թութակներ։ Նրանք առանց դժվարության հարմարվեցին նոր պայմաններին և արագորեն բազմացան։ Այժմ հատուկ թռչնանոցներում միլիոնավոր այդպիսի թութակներ են բազմացնում։ Ստացվել են նոր տեսակներ. դեղին, սպիտակ և երկնագույն։ Ալեձև թութակը հեշտորեն լեզու է սովորում, բայց խոսում է ճռվողյունով, արագ-արագ, ինչպես ասում են՝ «առանց վերջակետի և ստորակետի»։

Ամենանշանավոր խոսող թութակը ժակոն է, որն ունի գորշ գույն, իսկ պոչը կարմիր է։ Նրա հայրենիքը Արևմտյան Աֆրիկան է և Կոնգոն։ Ավելի քան հարյուր խոսք և մի քանի պարզ արտահայտություն կարող է նա սովորել։ Խոսում է, կարծես հասկանալով։ Օրինակ, առավոտյան ասում է՝ «բարի լույս», հրաժեշտի ժամանակ՝ «ցտեսություն», իսկ երբ հեռախոսը զնգում է՝ «ալլո»։ Ժակոն արտակարգ սուր լսողություն ունի. շուտ սովորում է մեղեդիներ և իրարից զանազանում։

Հարավամերիկյան մենակյացը նույնպես լավ է խոսում։ Սակայն առավել հետաքրքիր է նրանց կառուցած հասարակական բները, որոնք նման են խոտի դեզերի։ Թութակները համաձայնության գալով (մի մասը աշխատում է, իսկ մյուս մասը՝ աղմկում), ճյու-



1. Չինական այս մանյակե թութակը ապրում է Հարավարևելյան Տիբեթի լեռնային սոճու անտառներում։

2. Խոտակեր թութակի այս տեսակից՝ փայլուն թութակից շատ քիչ է մնացել Հարավային Ավստրալիայում։ Ապրում է թփերով ծածկված բլուրներում։

3. Դեղնամեջք լորին Մոլուկյան կղզիների բնակիչ է։ Նեկտարն ու ծաղկափոշին նրա սիրելի ուտելիքներն են։

ղերից կառուցում են բույնը, որի ելքի անցքը ներքևի կողմից է լինում։ Ամեն ընտանիք այդ բնում առանձին սենյակ ունի։ Ճյուղի վրա բնի բարձրությունը լինում է մեկ մետր, իսկ դիմացկուն ծառաբնի մոտ՝ երեք մետր։

Աֆրիկայում կան նաև անբաժան թութակներ։ Նրանց այդպես են անվանում, որովհետև երբ մի թութակը սպանվում է, նրա ընկերը վշտից մահանում է։ Նրանք էլ են ընտանիքով ապրում՝ կա՛մ տերմիտների դատարկ բներում, կա՛մ տանիքների տակ։ Երբեմն ժայռի խոռոչում բույն են կառուցում։ Ճյուղերը տեղ են հասցնում տարօրինակ ձևով. դնում են իրենց մեջքին և այդպես թռչում։

Լորիկուլյուսները կամ կախվող թութակները քնում են չղջիկների պես՝ գլխիվայր կախվելով ճյուղից։ Նրանք նույն ճարպկությամբ ցատկոտում են գետնի և ճյուղերի վրա։ Ուտում են մրգեր, ծաղկափոշի, խմում կոկոսյան արմավենու հյութ և նեկտար։

Թվում է, թե թութակները միատեսակ են. աղմկոտ են ու խելացի և ապրում են տաք երկրներում։ Մրգեր, հատապտուղներ, ընկույզ, նեկտար նրանց առատորեն մատակարարում է մշտադալար անտառը։ Ընդհանրապես այդպես է։ Սակայն կան նաև բացառություններ։ Որոշ թութակներ ապրում են լեռներում, որտեղ բավականին ցուրտ է։ Ուրիշները նման են ջայլամի՝ չեն կարողանում թռչել։ Կան նաև գիշերային կյանք վարող թութակներ։

Ավստրալիական գիշերային թութակը, դժբախտաբար, համարյա թե բնաջնջվել է։ Ցերեկը քնում է փշոտ թփերի և խոտերի մեջ, այդտեղ էլ իր համար բույն է կառուցում։ Վատ է թռչում։ Գիշերը քայլելով գնում է կեր՝ փշոտ բույսերի սերմեր որոնելու։

Թասմանիական կամ ավստրալիական, գետնամերձ կամ ճահճային թութակը և նորզելանդական վազող թութակը նույնպես շատ հազվադեպ են թռչում, միայն թշնամուց փախչելիս։ Կեր են գտնում հավի նման քուջուջ անելով։ Բույնը սարքում են գետնի վրա և թուխս նստում։ Ճուտիկները ծնվում են սև աղվամազով, որը նրանց շատ լավ քողարկում է։ Այս հետաքրքիր թութակները համարյա լրիվ ոչնչացվել են։



4. Փոքրիկ հարթապոչ թութակ ռոզելլան սավաննայից տեղափոխվել է Արևելյան Ավստրալիա և ապրում է դաշտերում։ Սնվում է տարբեր խոտաբույսերի սերմերով և այդ պատճառով վնաս է հասցնում դաշտերին։ Սակայն նա նաև մեծ օգուտ է տալիս՝ ոչնչացնելով վնասատու միջատներին։ Շատերն են սիրում այս թութակից իրենց տանն ունենալ։ Ռոզելլան անհաշտ բնավորություն ունի՝ չի բարեկամանում ուրիշ թութակների հետ։

Կակապո թութակը ևս մոռացել է թռչելը։ Աչքերի և կտուցի մոտ եղած փետուրների պատճառով նրա գլուխը նմանվում է բվի գլխի։ Գիշերային կյանք է վարում։ Մթնշաղին անհամարձակ քայլում է թփից-թուփ և կատվի նման զգուշորեն շուրջը նայում։ Գտնում է ծարխոտի տերև և ուտում։ Սիրում է նաև մրգեր ու սունկեր։ Նոր Զելանդիայում մնացել են մի քանի կակապո։ Շատ թշնամիներ ունի. աղվեսը, բազեն, շունը, առնետը, նույնիսկ՝ ոզնին։

Արտասովոր դեպք պատահեց կեա թութակի հետ։ Նրանք սնվում էին տարբեր տեսակի խոտերով ու միջատներով, քանի դեռ եվրոպացիները Նոր Զելանդիա չէին բերել ոչխարներ։ Անծանոթ կենդանու միսը շատ դուր եկավ թութակներին, և նրանք մսակեր դարձան։ Սկզբում սնվում էին սպանդանոցների մոտակայքում եղած ոչխարների մնացորդներով, այնուհետև իրենք սկսեցին իրենց համար միս հայթայթել. Կեան հարձակվում է ոչխարի վրա, հեծնում մեջքին և կտցում միսը կամ դմակը։ Այնքան է կտցում, մինչև որ սպանում է։ Այդ պատճառով կառավարությունը պարգև է տալիս յուրաքանչյուր սպանված կեայի համար։ Սակայն որոշ գիտնականներ գտնում են, որ կեան օգտակար գործ է կատարում, քանի որ սպանում է միայն հիվանդ ոչխարներին։

Բույն է կառուցում մարի կեան։ Նա կյանքի երկրորդ տարում գտնում է հարմար խոռոչ, արմատների տակ փոս կամ փտող ծառի փչակ։ Մեծացնում է այդ, երբեմն մինչև յոթ մետր և ծածկում մամուռով ու ծարխոտով։ Հունիս-հուլիսին 2—4 ձու է ածում և մեկ ամիս թուխս նստում։ Ճուտիկների հետագա խնամքին հետևում է վարուժանը։ Նա վարուժան ճուտիկներին կերակրում է երեք ամիս, իսկ մարիներին՝ չորս, որից հետո նրանք կարող են ինքնուրույն ապրել։

Լորին աշխույժ, շատախոս, շուտ բարեկամացող, աղավնուց ոչ այնքան մեծ թութակ է։ Ունի խայտաբղետ գունավորում։ Նրանց որոշ տեսակներից հիացինտի հոտ է գալիս։ Կան նաև մուշկի հոտ ունեցող լորիներ։ Մյուս թութակների համեմատ, լորիի լեզուն այլ կառուցվածք ունի. լեզվի ծայրին կա «վրձինիկ», որով հեշտությամբ կարողանում է ծաղկափոշի և նեկտար հավաքել։ Հատապտուղներ, ընկույզ և այլ մրգեր համարյա չի ուտում։ Այս պետք է իմանան բոլոր նրանք, ովքեր տանը լորի են պահում։ Նրան հարկավոր է կերակրել մեղրի, ծաղկափոշու, մանր միջատների և փափուկ մրգերի խառնուրդով։

# «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅԱՆ» ՀԱՂԹՈՂՆԵՐԸ

Անցած տարի «Պիոներ» ամսագրի անցկացրած «Ուշադիր ընթերցողների մրցությունը» մեծ հետաքրքրություն առաջացրեց: Յուրաքանչյուր փուլի ժամանակ խմբագրությունը հարյուրավոր նամակներ էր ստանում ոչ միայն Հայաստանից, այլև Վրաստանից ու Ադրբեջանից: Մրցությունը ամփոփելուց հետո, որոշվեցին հաղթողները:

Առաջին տեղը գրավեց Օշականի Մեսրոպ Մաշտոցի անվան դպրոցի 8-րդ Բ դասարանի աշակերտ Վահան Ամատունին: Նա կպարգևատրվի լուսանկարչական ապարատով:

Երկրորդ մրցանակ շահեցին Նատալյա Ավագյանը (Կիրովական, № 17 դպր., 7-րդ Բ դաս.) ու Գայանե Մկրտչյանը (Երևան № 53 դպր., 8-րդ Բ դաս.):



Երրորդ մրցանակ՝ Աղավնի Կարապետյանը (Հոկտեմբերյան, գյուղ Փշատավան, 9-րդ Բ դաս.), Արուսյակ Կարագյոզյանը (Երևան, № 50 դպր., 9-րդ Բ դաս.) և Սամվել Բադալյանը (Երևան, № 60 դպր., 8-րդ Բ դաս.):

Խրախուսական մրցանակներով կպարգևատրվեն Սվետլանա Ավետիսյանը (Երևան, № 74 դպր., 8-րդ Դ դաս.), Նազելի Առաքելյանը (Երևան, № 124 դպր., 7-րդ Բ դաս.), Աննա Արմենակյանը (Արարատ, գյուղ Այգեվան, 8-րդ Բ դաս.), Ռուզաննա Ասատրյանը (Հոկտեմբերյանի № 4 դպր., 8-րդ Ա դաս.), Վալերի Խաչատրյանը (Ադր. ՍՍՀ, Ստեփանակերտ, № 1 դպր., 9-րդ Ա դաս.), Թերեզա Հակոբյանը (Անի, գ. Սառնաղբյուր, 6-րդ Գ դաս.), Անահիտ Հայրապետյանը (Երևան, № 78 դպր., 4-րդ Դ դաս.), Արթուր Մկրտչյանը (Ադր. ՍՍՀ, ԼՂԻՄ, Մարտունի ավան, 6-րդ Ա դաս.), Սոնա Միկոյանը (Կիրովական, № 23 դպր., 7-րդ Դ դաս.), Ջորիկ Շահբազյանը (Հոկտեմբերյան, գ. Նոր Արտագերս, 8-րդ Բ դաս.), Սիլվա Պողոսյանը (Ադր. ՍՍՀ, Դաշքեսանի շրջ. գ. Ղուշչի, 7-րդ Բ դաս) և Օվսաննա Քալանթարյանը (Շամշադին, գ. Դրդի, 7-րդ Ա դաս):

# ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ

*Ուշադիր ընթերցողների մրցույթը շարունակվում է։*

*Այս տարի մրցույթը անցկացվելու է երկու փուլով։ Առաջադրված հարցերի պատասխանները կարող եք գտնել «Պիոների» №№ 1, 2, 3, 4, 5-ում։*

*Շատ միավորներ ստանալու համար ճիշտ պատասխանելը դեռևս բավական չէ։ Պատասխանները պետք է մաքուր գրված լինեն և առանց տառասխալների։*

## *ՄՐՑՈՒՅԹԻ ՀԱՐՑԵՐԸ*

*1. «Նրանց խումբը ունենու ծաղկած շիվ էր բերելու, իսկ մենք թե՞փ»։*

*Ի՞նչ է հաջորդում այս նախադասությանը։ Եվ ինչո՞վ է ավարտվում միջադեպը։*

*2. «Այդ միջոցին սենյակ մտան երկու աղջիկ»։ Նախադասության ո՞ր բառն է փոխված, գրեք ճիշտը։*

*3. «Անծանոթին բռնեցին վերջին...»։ Ավարտեք նախադասությունը և գրեք, թե ինչի՞ մասին է նյութը։*

*4. «Թե՛ աշխատում էի, թե՛ սովորում, ե՞րբ էի անելու այս գործը»։ Ո՞ր նյութից է վերցված այս նախադասությունը և ո՞ւմ մասին է պատմում հեղինակը։*

*5. «...Նրա զարկից ու ձայնից*
*Ողջ երկիրն է դողդողում...»*

*Լրացրեք քառատողը և գրեք պատասխանը։*

# ԲԱՌԱՇՂԹԱ

*1. Մարգ։ 2. Համ։ 3. Հեկա։ 4. Վտակ։ 5. Կավ։ 6. Գավառ։ 7. Թիվ։ 8. Քաթան։ 9. Ունք։ 10. Գին։ 11. Ազգ։ 12. Ազդր։ 13. Մարդ։ 14. Մորակ։ 15. Տաղ։ 16. Տարա։ 17. Տանկ։ 18. Թասակ։ 19. Փեսա։ 20. Կեր։ 21. Կապար։ 22. Պրակ։ 23. Կաղնի։ 24. Ժանր։*

*Տրված բառերի տառերի տեղաշարժումից ստացվում են ուրիշ բառեր՝ գոյականներ։ Օրինակ՝ տաղ բառից ստացվում է տղա բառը։*

*Այդպիսի նոր բառերով էլ պետք է կազմել բառաշղթան։*



*Առաջարկ՝ ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

*Նոր գիրք ձեզ համար*




## ՅԱԱՆ ՌԱՆՆԱՊԻ — «ՅՈՒԽԱՆ ՍԱԼՈՒՆ ԵՎ ՆՐԱ ԸՆԿԵՐՆԵՐԸ»

Դուք երբևէ նայե՞լ եք ձեր շուրջը, տեսե՞լ եք, թե ինչպիսին են ձեր ընկերները, ինչպիսի հակումներ ունեն նրանք, ինչպիսի նախասիրություններ, ինչով են տարբերվում մեկը մյուսից: Չե՞ք նայել, ափսոս, դա շատ հետաքրքիր է: Հապա այսուհետև ուշադի՛ր եղեք ձեր համադասարանցիների նկատմամբ, ուսումնասիրե՛ք նրանց բնավորությունները, տեսեք որքա՜ն տարբեր են նրանք:

Այ՛, Յուխան Սալուն հանձնարարություն է ստացել ջոկխորհրդի նախագահից՝ որևէ բան գրել իրենց ջոկատի պիոներներից յուրաքանչյուրի մասին, առանձին-առանձին բնութագրել նրանց: Թվում է, թե դա ծիծաղելի հանձնարարություն է, բայց Սալուն բոլորովին էլ չի ծիծաղում, ընդհակառակը, նա շատ մտահոգված է՝ հարկավոր է լրջորեն մտածել, ճիշտ կշռադատել, հո ամեն բան չե՞ս գրի: Օրինակ, ի՞նչ գրել հենց Էլմար Ռինգայի՝ ջոկխորհրդի նախագահի մասին: Գրել, որ նրա ատամը ընկել է, ի՞նչ միտք ունի: Բայց, որ Ռինգայի մեջ երկու մարդ է ապրում, դա անպայման պետք է գրել՝ մեկը պարզապես մարդ, մյուսը՝ ջոկխորհրդի նախագահ: Երբ նա պարզապես մարդ է՝ սրամիտ կատակներ է անում, բայց հենց հիշում է իր պաշտոնը, աչքիդ առաջ փոխվում է՝ սկսում է ճառեր արտասանել, խրատ, քարոզ կարդալ:

Հաջորդը Ռուուտան է: Նա, ինչպես և Մարթան, աշխատում է հոկտեմբերիկների հետ: Մի անգամ նա հոկտեմբերիկներին պատմում էր, թե ինչ բան է կողմնացույցը... Բայց երբ երեխաներին զբոսանքի տարավ և մոլորվեց ճանապարհին, կողմնացույցը...

Չէ՛, ավելի լավ է դուք ինքներդ կարդաք էստոն գրող Յաան Ռաննապի «Յուխան Սալուն և նրա ընկերները» պատմվածքների ժողովածուն և իմանաք, թե այնուհետև ինչ գրեց Սալուն իր մյուս ընկերների մասին, նաև իր մասին: Ասեմ, որ նա մի քիչ էլ ինքնաքննադատությամբ զբաղվեց. պետք է մինչև վերջ անկեղծ լինել, նշում ես ուրիշի թերությունները, բարի եղիր քո նկատմամբ էլ անաչառ լինել:

*ԱՄԱԼՅԱ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 6 հունիս 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ОРГАН ЦК ЛКСМ АРМЕНИИ И РЕСПУБЛИКАНСКОГО СОВЕТА ПИОНЕРСКОЙ ОРГАНИЗАЦИИ ИМ. В. И. ЛЕНИНА

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 08742: Պատվեր՝ 544: Տպաքանակ՝ 83400: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 28/ V 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:


ԿԱՆԱՉ ԽԱԼԱԹՈՎ ԲԺԻՇԿԸ
ՐԱՈՒՖ ՏՈԼԻԹՈՎ
(Ուզբեկ բանաստեղծ)
Մի բժիշկ գիտեմ խալաթով կանաչ,
Ապրում է սարում ու դաշտում ծաղկած:
Նա դեղ չի տալիս ու չի սրսկում,
Նրա դեղերն են՝ մրգերը հասուն,
Ծաղկունքի բույրն ու ջուրը աղբյուրի,
Քնքուշ շոյանքը պաղ-պաղ զեփյուռի,
Մարգանքն ու խաղը միշտ մաքուր օդում,
Ուրախ ժամանցը և լողը գետում:
Իր կանաչ-զմրուխտ խալաթը հագին,
Պահպանում է նա մեր հողը անգին,
Մաքրում է փոշուց օդը անդադար,
Որ մարդիկ լինեն առույգ ու կայտառ:
Մեր առողջության հսկիչն է անքուն,
Այդպիսի բժիշկ չեմ տեսել կյանքում:
Փոխադրությունը՝ ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ